## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ



### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս 2—52—78։*



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ԱՌՈՂՋ ԿԵՆՑԱՂԻ ՀԱՄԱՐ

Վ. ՌՈԺՆՈՎ
ԲԺՇԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԹԵԿՆԱԾՈՒ

*Սոցիալիստական համակարգն ստեղծել է բոլոր պայմանները մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցության անընդհատ բարձրացման, նրանց կուլտուրական մակարդակի անխափանընթաց վերելքի, ժողովրդի բոլոր հոգևոր ուժերի ծաղկման համար։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության համար բարձրագույն օրենք է հանդիսանում հոգատարությունն այն բանի նկատմամբ, որպեսզի սովետական մարդիկ շարունակ ավելի լավ ապրեն, որպեսզի լրիվ բավարարվեն նրանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները։ Տարեցտարի ավելացվում են մեր երկրում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման, առողջապահության և ժողովրդական կրթության,*

գիտության, արվեստի և կուլտուրայի զարգացման համար հատկացվող միջոցները։ ՍՍՌՄ-ում հսկայական հաջողություններ են ձեռք բերվել բնակչության աշխատանքի ու կենցաղի առողջացման համար մղվող պայքարում, անշեղորեն աճում է ծննդաբերությունը և նվազում է մահացությունը։ Ամրապնդվում են սովետական հասարակության բարոյական հիմքերը։

Սովետական Միությունում արմատախիլ են արված այսպես կոչված «սոցիալական հիվանդությունների» գոյության հիմքերը, հիվանդություններ, որոնք այնքան տառապանքներ են բերում կապիտալիստական երկրների ժողովրդական մասսաներին։ Սակայն սովետական հասարակությունից դեռ քիչ ջանքեր չեն պահանջվում՝ կապիտալիզմի մնացուկները լրիվին ոչնչացնելու համար։

Կենցաղային ամենավնասակար մնացուկներից մեկն է հարբեցողությունը։ Կապիտալիստական երկրներում, որտեղ ժողովրդական մասսաները ենթարկվում են ճնշման ու շահագործման, որտեղ նրանք ապրում են աղքատության ու տգիտության մեջ, խիստ տարածված է հարբեցողությունը։ Ուժից վեր աշխատանքից, իսկ ավելի հաճախ գործազրկությունից, անհույս կարիքից ուժաս-



պառ եղող և մշտապես մի կտոր հաց ճարելու հոգսից տանջվող մարդու համար օղին, գինին «մխիթարություն» են թվում, մի միջոց՝ «ինքնամոռացության տալու», թեկուզ և կարճ ժամանակով ծանր իրականությունից հեռանալու համար։ Հանրահայտ է, օրինակ, որ ալկոհոլիզմը պարտադիր ուղեկիցն է կապիտալիստական երկրների հետնախորշերի, որտեղ զզվելի, անմարդկային պայմաններում ապրում են բնակչության ամենաչքավոր խավերը։

Մեր երկրում սովետական բոլոր մարդիկ վայելում են աշխատանքի, հանգստի, կրթության իրավունք, ծերության դեպքում նյութական ապահովության իրավունք։ Նրանց չի ճնշում անվստահությունը վաղվա օրվա նկատմամբ, նրանք զբաղված են ստեղծարար աշխատանքով՝ ի բարօրություն սիրելի Հայրենիքի, նրանց համար ստեղծված են կուլտուրապես աճելու և իրենց ընդունակություններն ու տաղանդները զարգացնելու բոլոր պայմանները։ Սակայն մենք դեռ չենք վերացրել անցյալի մի անամոթ ու վնասակար մնացուկ՝ հարբեցողությունը։ Մեզանում դեռ կան մարդիկ, որոնք սիստեմատիկորեն ի չարն են գործադրում ոգելից խմիչքները, քայքայում են իրենց ա-

առողջությունը, կործանում են իրենց ընտանիքի երջանկությունը, հսկայական վնաս են հասցնում սոցիալիստական հասարակությանն ու պետությանը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ ընտանեկան անախորժությունների, կենցաղային տուրուդմբոցների, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների, արտադրության մեջ և տրանսպորտում, կոլտնտեսություններում և սովխոզներում տեղի ունեցող վթարների ու գործալքումների ճնշող մեծամասնությունն առաջանում է հարբեցողությունից։ Հաճախ հարբեցողությունը հանգեցնում է քրեական հանցագործությունների՝ գողության, կողոպուտի և նույնիսկ մարդասպանության։ Հաճախ է պատահում, որ մարդ մտադրվելով «մի քիչ զվարճանալ», մեկ շիշ օղիով «բարձրացնել տրամադրությունը», ուշքի գալով սարսափով իմանում է, որ ինքը կատարել է մի այնպիսի ծանր հանցագործություն, որով հավիտյան անարգել է իր ու իր մերձավորների անունը։ Վերջերս «Օգոնյոկ» ժուռնալում տպված էր մի հոդված, որը նկարագրում էր հենց այդպիսի մի ողբերգական դեպք։ Մոսկվայի բուհերից մեկի չորս շրջանավարտ ուսանողներ պետական քննությունները հաջողությամբ



հանձնելուց հետո որոշում են իրենց կյանքի այդ կարևոր իրադարձությունը «նշանավորել» մի լավ խմելով... Նրանք ուշքի են գալիս միայն երկրորդ օրը՝ միլիցիայում, ուր նրանց տարել էին հարբած վիճակում տաքսիի շոֆերին և պոստապահ միլիցիոներին ծեծելուց հետո։ Այդ գործը քննած ժողդատարանը իրավամբ կայացրեց խիստ դատավճիռ։ Դատարանը Պյոտր Բոկարյովին, Սերգեյ Դիմկովին և Վլադիմիր Սոկոլովին դատապարտեց հինգ տարվա, Յակով Սաշկովին՝ երկու տարվա ազատազրկման։

Ալկոհոլը մի թույն է, որը կործանարար ազդեցություն է թողնում մարդու ամբողջ օրգանիզմի և, մանավանդ, նյարդային համակարգության վրա։ Սուր թունավորման դեպքում արյան մեջ ներծծված ալկոհոլը ճնշող ազդեցություն է գործում ամենից առաջ գլխուղեղի կեղևի վրա, ջլատելով մարդու հոգեկան բարձր ֆունկցիաները։ Հարբած մարդը կորցնում է ինքնատիրապետման բանականությունը, չի գիտակցում իր արարքները, վատ է կողմնորոշվում կամ բոլորովին չի կողմնորոշվում շրջապատի իրադրության մեջ։

Բոլորին քաջ ծանոթ է հարբած մարդու զզվելի դեմքն ու վարքագիծը։ Հարբեցողը,

որպես կանոն, լինում է սանձարձակ, թափառող, աղմկարար, բիրտ ու անամոթ, պարծենկոտ ու աներես։ Հարբեցողը հաճախ վտանգավոր է թե՛ իր և թե՛ շրջապատի համար, քանի որ նա անում է այնպիսի բաներ, որոնք երբեք չէր անի լուրջ վիճակում։ Այդ ամենը իր դիպուկ բնորոշումն է ստացել «Հարբածին ծովը ծնկաչափ է թվում» ժողովրդական ասացվածքում։

Խիստ հարբած մարդը բոլորովին կորցնում է շրջապատը հասկանալու ընդունակությունը, դառնում է անզգա, քայլում է երերալով, լեզուն կապ է ընկնում։ Վերջապես, հարբած մարդը վայր է ընկնում որևէ տեղ և մրափում խոր քնի մեջ։ Հաճախ դրա հետևանքը լինում է մրսելը, հիվանդանալը, մեքենայի տակ ընկնել-մահանալը կամ խեղանդամ դառնալը, մանավանդ գիշեր ժամանակ, ձմեռը ցրտահար լինելը և այլն։

Հաճախ ալկոհոլի մեծ դոզաներն առաջ են բերում շնչառության ու անոթատար կենտրոնների խանգարում և պատճառ դառնում մահվան։

Գիտնականների հետազոտությունները ցույց են տալիս, որ ալկոհոլի մինչև անգամ փոքր դոզաները բացասաբար են անդրադառնում հոգեկան գործունեության վրա։



30—50 գրամ մաքուր ալկոհոլն արդեն իսկ նկատելիորեն նվազեցնում է մարդու մտավոր ընդունակությունները, մանավանդ այնպիսի աշխատանքի ժամանակ, երբ աշխատողից պահանջվում է լինել ուշադիր, գործողությունները կատարել ճշգրտությամբ, ցուցաբերել հնարագիտություն, օրինակ՝ գործիքների, մեխանիզմների, ապարատուրայի վրա աշխատելիս և այլն։ Ալկոհոլի ամենաաննշան դոզան դանդաղեցնում է բանավոր ու գրավոր հաշվումների արագությունը, ավելացնում սխալների թիվը։ Թեթևակի հարբելը վտանգավոր է մանավանդ տրանսպորտ վարողների համար, քանի որ դրա պատճառով համարյա միշտ խախտվում են փողոցային երթևեկության կանոնները, տեղի են ունենում դժբախտ դեպքեր և վթարներ։

Սպիրտային խմիչքների խրոնիկական չարաշահման դեպքում տեղի են ունենում օրգանիզմի ամբողջ գործունեության էական ու լուրջ խախտումներ։ Խրոնիկական ալկոհոլիկները կորցնում են դեպի աշխատանքն ունեցած հետաքրքրությունը, շուտ են հոգնում, վատ են յուրացնում նորը, թուլանում է նրանց հիշողությունն ու շրջահայացությունը, կորցնում են ստեղծագործական աշխատան-

քի ունակությունը, խիստ նվազում է նրանց հետաքրքրությունների շրջանակը։ Հարբեցողի ամբողջ ուշքն ու միտքը մի բանի վրա է՝ բավարարել խմելու իր կրքերը, նրա մնացած հոգսերն ու հետաքրքրությունները հետին պլան են մղված։ Ալկոհոլիկները հաճախ միանգամայն կորցնում են քաղաքացիական և ընտանեկան պարտքի զգացմունքը, լքում են ընտանիքն ու աշխատանքը, կորցնում են մարդկային դեմքը, խմելու համար ծախծխում են իրերը։ Օղու փող ճարելու համար՝ նրանք կարող են գողություն, մուրացկանություն անել։ Խրոնիկական ալկոհոլիկները հաճախ աչքի են ընկնում իրենց ստախոսությամբ, անսկզբունքայնությամբ, կորցնում են հարգանքն իրենց և շրջապատի նկատմամբ։

Շատ և երկար ժամանակ ալկոհոլ գործածելու դեպքում մարդ կորցնում է իր մտավոր ընդունակությունները և դառնում տկարամիտ։ Ալկոհոլային հատուկ պսիխոզների ծանր ձևն է արբեցատենդը։ Հիվանդը չի ճանաչում իրադրությունը, ծանոթ մարդկանց, նրան թվում է, թե ինքը շրջապատված է թշնամիներով, թե շենքում ինչ-որ սատանաներ են վխտում։ Այստեղից էլ՝ «խմել մինչև աչքին սատանա երևա» հանրածանոթ



արտահայտությունը։ Արբեցախտով տառապողները վախից տանջվելով սկսում են թռչել, նետվում են փախչելու-թաքնվելու և հաճախ ծանր կերպով վնասում են իրենց ու շրջապատողներին, իրենց ցած են գցում լուսամուտից և այլն։ Խրոնիկական ալկոհոլի ժամանակ հոգեկան հիվանդության մի բավական տարածված ձևն է զառանցանքը, երբ հարբեցողն առանց որևէ առիթի և անհիմն կերպով սկսում է կնոջը կասկածել դավաճանության մեջ, հետապնդում է նրան, սպառնում և սկանդալներ է սարքում։

Ալկոհոլը շատ վտանգավոր է տարափոխիկ ծանր հիվանդություններ ունեցող կամ կոնտուզիայի ենթարկված, վիրավորված, գլխացավով տառապող մարդկանց նյարդային համակարգության համար։ Առանձնապես թունավոր են ալկոհոլի զանազան սուռոգատները, օրինակ՝ չզտված սպիրտը, դենատուրատը, տնայնագործական եղանակով պատրաստվող օղին։ Դրանց գործածությունը հաճախ հանգեցնում է ծանր հետևանքների՝ թունավորման, կուրացման և մինչև իսկ մահվան։

Ալկոհոլը կործանարար ազդեցություն է թողնում ոչ միայն նյարդային համակարգության վրա, այլև մյուս օրգանների վրա. ա-

առաջ է գալիս սրտի հիվանդագին ճարպակալում, որի հետևանքով՝ այտուց, հևոցներ, լյարդի բորբոքում, մարսողության խանգարում և այլն։ Սպիրտային խմիչքների հետևանքով մարդիկ ավելի շուտ են ծերանում ու մահանում։

Ալկոհոլային խմիչքներ գործածողներից շատերն իրենց հանգստացնում են նրանով, թե իրենք հարբելու աստիճան չեն խմում, այլ փոքր դոզաներով՝ «ճաշից առաջ» մեկ-երկու բաժակ, բարեկամի հետ «բաժակ բռնելով» և այլն։ Սակայն գիտական հետազոտությունները ցույց են տալիս, որ ալկոհոլի՝ նույնիսկ այդպիսի դոզաներով սիստեմատիկ գործածությունը հաճախ հանգեցնում է ալկոհոլիզմի և շատ ծանր է անդրադառնում օրգանիզմի վրա։ Ճիշտ այդպես էլ խորապես սխալվում են նրանք, ովքեր կարծում են, թե սակավ թունդ խմիչքները վնասակար չեն օրգանիզմի համար։ Բժշկական տեսակետից՝ 40 աստիճանի թնդություն ունեցող 200 գրամ օղին և 16 աստիճան թնդություն ունեցող 500 գրամ գինին իրենց թունավոր ներգործությամբ հավասար են։ Այստեղից պարզ է, թե որքան վնասակար է ճաշից առաջ «ախորժակ բացելու» կամ տրամադրությունը բարձրացնելու, հոգնածությունն



ու ձանձրույթը ցրելու համար կանոնավոր կերպով, սիստեմատիկաբար մեկ-երկու բաժակ օղի խմելու սովորությունը։ Հարկավոր է հաստատապես հիշել, որ ալկոհոլի մշտական գործածությունը՝ անգամ փոքր դոզաներով, բացի վնասից ոչինչ չի տա և ոչնչով չի կարող արդարացվել։

Նրանք, ովքեր տառապում են ալկոհոլով, պետք է անհապաղ ու սիստեմատիկորեն բուժվեն, դառնան մեր Հայրենիքի լիարժեք քաղաքացիներ։ Առաջավոր սովետական բժշկական գիտությունը հենվելով ակադեմիկոս Ի. Պ. Պավլովի ուսմունքի վրա, հուսալի եղանակներ է մշակել այդ ծանր հիվանդության բուժման համար, այն պայմանով, իհարկե, եթե հիվանդը լրջորեն վերաբերվի դրան և ցանկանա լրիվ անցնել բուժման կուրսը։

Երբեմն մենք ականատես ենք լինում այնպիսի դեպքերի, երբ որոշ ծնողներ, որոնք սովոր են ի չարը գործ դնել սպիրտային խմիչքները, գինի են տալիս երեխաներին, կարծելով, թե դրանից վնաս չի լինի։ Դա խոր մոլորություն է։ Մանուկների օրգանիզմը առանձնապես զգայուն է ալկոհոլի նկատմամբ և այդ թույնից նա շատ ավելի է տուժում, քան հասակավորների օրգանիզմը։

Ալկոհոլը կասեցնում է երեխաների ու անչափահասների նորմալ աճումն ու մտավոր զարգացումը, ֆիզիկապես ու բարոյապես այլանդակում է նրանց, խանգարում է նրանց ուսմանն ու ճիշտ դաստիարակությանը։

Հարբեցողության, սանձարձակության դեմ, բնակչության առողջ կենցաղի համար մղվող պայքարը պետք է դառնա մեր երկրի յուրաքանչյուր գիտակից քաղաքացու գործը, բոլոր հասարակական կազմակերպությունների գործը։ Սպիրտային խմիչքների չարաշահողներին պետք է ցույց տալ նրանց արատի հասարակական դատապարտման ամբողջ ուժը, ցույց տալ, որ նրանք վնասում են ոչ միայն իրենց, այլև ամբողջ սոցիալիստական հասարակությանը, խայտառակում են սոցիալիզմի երկրի քաղաքացու բարձր կոչումը։ Լայնորեն մոբիլիզացնելով հասարակական ներգործման բոլոր ուժերն ու միջոցները՝ մենք կհասնենք նոր հաջողությունների բնակչության առողջ կենցաղի համար մղվող պայքարում։

---

# ԿՐՈՆԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Դարերի ընթացքում կրոնական գործիչները ձգտել են հավատացյալներին ներշնչել այն միտքը, թե կրոնը մարդու բնածին հատկությունն է, թե մարդ ծնվում և մեռնում է կրոնի հետ միասին։ Մարքսիզմ-լենինիզմը մինչև վերջ մերկացրեց այդ առասպելը և բացահայտեց կրոնի երկրային ծագումը։ Միայն արտադրության զարգացման, անհրաժեշտ կենսամթերքների ստեղծման հիման վրա զարգացան ու ձևավորվեցին մարդկանց պատկերացումները շրջապատող բնության մասին։ Ուրեմն, կրոնը միշտ չի եղել, այլ ծագել է մարդկային հասարակության պատմական զարգացման որոշ փուլում։

Կրոնը անզորության, անօգնականության գաղափարախոսությունն է, շահագործման և ստրկության հետ ճնշված մասսաներին հաշտեցնելու գաղափարախոսությունը։ Այն

*հանգամանքը, որ կրոնական գաղափարները տիրապետում են կապիտալիստական, գաղութային ու կախյալ երկրների միլիոնավոր մասսաներին, բացատրվում է սոցիալական և ազգային ճնշումով, աշխատավորների թշվառությամբ և իրավազրկությամբ։ Ճնշվող և շահագործվող մասսաներին թվում է, թե նրանց տանջանքներին վերջ կտրվի մահվանից հետո, հանդերձյալ աշխարհում։*

*Այսպիսով, կրոնը, որ հանդես է եկել բնության, նրա տարերային ուժերի դեմ, սոցիալական ճնշման դեմ պայքարելու գործում մարդկանց կարծեցյալ անզորության, անօգնականության հետևանքով, այժմ հաջողությամբ օգտագործում, պաշտպանում և ամրապնդում են շահագործողները, բանկիրները, մոնոպոլիստները, որպես աշխատավորների հոգեկան ստրկացման, դասակարգային պայքարի բթացման գործիք, իրենց տնտեսական և քաղաքական տիրապետության ամրապնդման գործիք։ Այդ նպատակի համար իմպերիալիզմը պատմության աղբակույտերից դուրս է քաշել և օգտագործում է խավարամոլության և տերտերականության բոլոր մաշված զրահները, դահիճի և տերտերի ֆունկցիաները։*



*Ամերիկյան խոշոր տրեստները ոստիկանության, պրովակատորների, լրտեսների հետ մեկտեղ մեծ աջակցություն են ցույց տալիս կրոնական կազմակերպություններին՝ իրենց միջոցներով պահում են կրոնական պաշտամունքի սպասավորներին։ ԱՄՆ-ի բանակում պետական միջոցներով ստեղծված է ռազմական հոգևորականների հատուկ կորպուս, որոնք զինվորներին դաստիարակում են իմպերիալիզմի ռեակցիոն իդեոլոգիայի ոգով և իրագործելով ժանդարմի իրենց դերը, արթուն կերպով հսկում են զինվորների վարքին, քաղաքական տրամադրություններին։*

*Ամերիկյան իմպերիալիստների և Հռոմի պապի միջև գոյություն ունի սերտ կապ, որն ուղղված է աշխատավորների և նրանց կազմակերպությունների, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի դեմ։ Ժամանակակից կապիտալիստական երկրներում բոլոր կրոնները և ամենից առաջ կաթոլիկությունը Վատիկանի գլխավորությամբ լայնորեն օգտագործվում են իմպերիալիստների կողմից աշխատավորների հոգևոր և տնտեսական ստրկացման համար, կոմունիզմի դեմ պայքարելու, ՍՍՌՄ և ժողովրդա-դեմոկրա-*

տական երկրների դեմ պատերազմ հրահրելու համար։

Մարքսիզմ-լենինիզմը կրոնը միշտ դիտել է որպես ժողովրդի հաշիշ, բուրժուական ռեակցիայի գործիք։

«Կրոնը,— գրել է Մարքսը,— դա...թույն է ժողովրդի համար»։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կրոնը հոգևոր օղու մի տեսակն է, որի մեջ կապիտալի ստրուկները խեղդում են իրենց մարդկային պատկերը, փոքրիշատե մարդավայել կյանքի իրենց պահանջը։

Կրոնը հաստատում է, թե ամեն ինչ աստված է ստեղծել, թե մարդկանց բաժանումը հարուստների և աղքատների սահմանված է աստծու կողմից և այդ պատճառով էլ աշխատավորները պետք է անտրտունջ տանեն ճնշումը, շահագործումը, ստրկությունը և աղքատությունը։ Կրոնն աշխատավորներին երջանկություն է խոստանում հանդերձյալ աշխարհում, մթագնում է նրանց գիտակցությունը, հավատ է ներշնչում գերբնական ուժերի գոյության նկատմամբ, որոնցից իբր թե կախված է մարդու բախտը։

Ուստի կրոնն արգելակում է ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն նախաձեռնությունը, սրբագործում և արդարացնում է շահագործողական կարգերը, շլատում է աշ-



խատավորների հավատն իրենց ուժերի նկատմամբ, նրանց ուշադրությունը դարձնելով դեպի երկինք, շեղում է այստեղ՝ երկրի վրա կյանքը վերակառուցելու համար մղվող պայքարից։

Սոցիալիզմի հաղթանակի, շահագործող դասակարգերի վերացման հետևանքով, կոմունիստական պարտիայի մեծագույն դաստիարակչական աշխատանքի շնորհիվ արմատապես փոխվեց սովետական մարդկանց բարոյական հոգևոր կերպարը, աճեց նրանց գիտակցականությունը, մեր երկրում անբաժանելիորեն տիրապետող դարձավ սոցիալիստական իդեոլոգիան, որի անխախտ հիմքն է կազմում մարքսիզմ-լենինիզմի աշխարհայացքը։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում աշխատավորները հնարավորություն ստացան գիտակից կերպով կերտելու պատմությունը, ստեղծելու նոր հասարակական հարաբերություններ։ Սովետական մարդիկ հաղթանակ ձեռք բերեցին տարերայնության դեմ մղվող պայքարում, իրենց շահերին ծառայեցրին գիտության և տեխնիկայի նվաճումները, դարձան նոր կյանքի ազատ, գիտակից կառուցողներ, իրենց բախտի տնօրինողը։

Սովետական մարդը բնությունից ողորմություն չի խնդրում, աստծու օգնությանը չի դիմում, այլ բնությունը ենթարկում է իրեն, նրան ստիպում է տալ այն ամենը, ինչ անհրաժեշտ է մեզ։ Գիտությունը մարդու ամենահավատարիմ օգնականն է բնության դեմ մղվող պայքարում, նրա բոլոր ուժերին և հարստություններին տիրապետելու գործում։ Սովետական մարդիկ համարձակորեն վերափոխում են բնությունը, կառուցում են գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, պայքարում են սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար, ամրապնդում են մեր մեծ Հայրենիքի ռազմա-տնտեսական հզորությունը։ Իրենց ստեղծագործական աշխատանքում ամեն քայլափոխում սովետական մարդիկ համոզվում են, որ աստված տեղ չունի նոր կյանքի շինարարության գործում, որ երջանկությունը ո՛չ թե աստծու, ծիսակատարությունների, ուխտագնացությունների մեջ է, այլ ժողովրդի բարօրության համար մղվող պայքարի, կոմունիզմի կառուցման մեջ, պարտիայի և կառավարության շուրջը սովետական ժողովրդի համախմբվածության մեջ։



Սովետական հասարակական և պետական կարգի շնորհիվ, ամենաառաջավոր գիտության և տեխնիկայի շնորհիվ անսահման հնարավորություններ են ստեղծվել մեր երկրի աշխատավորների նյութական և կուլտուրական բարեկեցության բարձրացման համար։ Սոցիալիզմի հաղթանակի պայմաններում խարխլված և մերկացված են բոլոր և ամեն տեսակ կրոնականության հիմքերը, կրոն ծնող պատճառները՝ դասակարգային-սոցիալական ճնշումը, մարդու շահագործումը մարդու կողմից, աղքատությունը և գործազրկությունը։ Մեր հասարակության մեջ, որտեղ գիտությունը դարձել է ժողովրդի իսկական սեփականությունը, կրոնի գոյության համար հող չկա։ Կյանքը, հենց իրենց՝ հավատացյալների կենսական փորձը ամեն քայլափոխում հերքում է կրոնը, հակասում է նրան։ Սոցիալիզմի հաղթանակը, շահագործող դասակարգերի վերջնական վերացումը, մեր հասարակության բարոյաքաղաքական միասնության ստեղծումը հօդս ցնդեցրին եկեղեցականների բոլոր հույսերը բուրժուական կարգերի վերականգնման ուղղությամբ։ Կյանքը հարկադրեց կրոնական պաշտամունքի ներկայացուցիչներին ընդունել, որ սովետական ժողովրդին այլևս

չի կարելի շրջել կոմունիզմի ուղուց։ Դրա համար էլ եկեղեցին Հայրենական պատերազմի տարիներին և դրանից հետո լոյալ դիրք բռնեց Սովետական պետության նկատմամբ։

Բայց սխալ և քաղաքականապես վնասակար կլինի դրանից անել այն եզրակացությունը, թե կրոնը այժմ այլևս պակաս ռեակցիոն ու վնասակար է։ Սխալ են այն ընկերները, որոնք կարծում են, թե մեր երկրում կրոնի սոցիալական բազայի վերացումով վերացել է աթեիստական պրոպագանդայի անհրաժեշտությունը, թե կոմունիստական շինարարության ընթացքում կրոնական իդեոլոգիան տարերայնորեն, ինքնահոսի կարգով վերանում է։

Կրոնական նախապաշարմունքները մեզ մոտ արտահայտվում են ո՛չ թե կրոնական համոզմունքների հիման վրա, ո՛չ թե նրա համար, որ մարդիկ հավատում են աստծու գոյությանը, այլ՝ ըստ տրադիցիայի, սովորության հիման վրա, որովհետև «այդպես էին անում առաջ» կամ «այդպես են անում ուրիշները»։ Կրոնի վնասակարությունը հանդես է գալիս հատկապես կրոնական տոների և ծեսերի ժամանակ, որտեղ աստ-



վածային հեքիաթներ են պատմվում աստծու, սրբերի, անմահ ոգու, դրախտի և դժոխքի մասին, կյանքի, մարդկանց վարքի, նրանց փոխհարաբերությունների մասին, սխալ, հակագիտական պատկերացումներ են ստեղծվում բնության և հասարակության մասին և այլն։ Կրոնական այդ տոները, ուխտագնացությունները և ծեսերը մեծ վնաս են հասցնում մեր ժողովրդական տնտեսությանը. Նրանք հաճախ զուգակցվում են մեծ քանակությամբ անասուններ մորթելու, հանրային ու պետական միջոցները շռայլելու, մարդկանց աշխատանքից կտրելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունը խախտելու հետ և այլն։ Չի կարելի հանդուրժել այն բանը, երբ կոլտնտեսականների որոշ մասը բերքահավաքի եռուն օրերին աշխատանքը թողնում և ուխտ է գնում։ Կրոնական մնացուկները գործալքության, հարբեցողության, խուլիգանության, ընտանեկան կռիվների և հակահասարակական այլ արարքների պատճառ են հանդիսանում, բացասաբար են անդրադառնում մարդկանց առողջության, նրանց հոգևոր ու բարոյական կերպարի վրա։ Կրոնական շատ ծիսակատարություններ հաճախ զանազան հիվանդու-

*թյունների աղբյուր են ծառայում (ժամագրքերի, խաչքարերի համբույրումը, սառը ջրում մանուկներին լողացնելը, հրեաների ու մահմեդականների մեջ թլպատելու ծեսերը և այլն)։*

*Դեռևս կան մարդիկ, որոնք պսակվում են եկեղեցում, կնքում են երեխաներին, հավատում են «սուրբ» ջրի բուժիչ հատկություններին, «կախարդանքներին», դիմում են գրբացների և նրանց նման խաբեբաների «գուշակություններին» և «խորհուրդներին», որոնք շահագործում են մարդկանց դյուրահավատությունը և խաբում նրանց։ Հատկապես մեծ վնաս են հասցնում այն գրբացներն ու «տատմերները», որոնք զբաղվում են հիվանդություններ «բուժելով», նրանց առաջարկած «դեղատոմսերը» նորանոր ախտերի, տառապանքների, վաղաժամ մահվան աղբյուր են ստեղծում։*

*Կրոնական մնացուկները վնաս են հասցնում և՛ իրենց՝ հավատացյալներին և՛ սովետական հասարակությանը. նրանք հավատացյալներին դարձնում են պասսիվ, կամազուրկ, կասեցնում են նրանց միտքն ու եռանդը, թույլ չեն տալիս ճիշտ ըմբռնելու բնության և հասարակության այս կամ այն երևույթի էությունը. մարդու մեջ*



*դաստիարակում են ստրկական հեզության ոգի, սպանում են նրա նախաձեռնությունը, պատվաստում են սովետական մարդկանց խորթ բարոյական գծեր։ Եթե սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը մեր ժողովրդին համախմբում են միասնական նպատակի համար մղվող պայքարում, ապա կրոնը բաժանում է մարդկանց, ժողովուրդների մեջ թշնամանք և անվստահություն է սերմանում, հավատացյալների ուշադրությունը շեղում է լավագույն կյանքի համար ակտիվ պայքար մղելուց։ Կրոնը մարդկանց կոլեկտիվության, համախմբվածության, միասնության մահացու թշնամին է։*

*Այսպիսով, կրոնը, նրա տոները և ծեսերը արմատապես հակասում են գիտությանը, սովետական ապրելակերպին, աղտոտում են հավատացյալ մարդկանց գիտակցությունը և կենցաղը, նրանց մեջ դաստիարակում են կամազրկություն, պասսիվության զգացմունք, անվստահություն մարդկային բանականության, գիտության*

ուժի նկատմամբ, անզորություն բնության դեմ մղվող պայքարում, աշխատավորներին խանգարում են կոմունիզմի կառուցման համար գիտակից և ակտիվ պայքար մղել։

Կրոնական մնացուկների հաղթահարման կարևորագույն միջոց են հանդիսանում սոցիալիստական գաղափարախոսության ավելի ու ավելի լայն արմատավորումը մասսաների մեջ, գիտական կոմունիզմի գաղափարների պրոպագանդան, մասսաների կոմունիստական դաստիարակությունը և բնագիտական գիտելիքների պրոպագանդան։

Ագիտատորների խնդիրն է համբերատար և հաստատակամորեն, տեղական փաստերի հիման վրա, կոնկրետ օրինակներով բացատրել ժողովրդին կրոնի հակաժողովրդական ռեակցիոն էությունը, նրան հակադրել մարքսիզմի մատերիալիստական աշխարհայացքը, կրոնական մնացուկների դեմ պայքարը այնպես տանել, որ չվիրավորվեն հավատացյալների զգացմունքները, որ նրանց ոչ թե ետ մղել, այլ մոտեցնել մեր գաղափարախոսությանը, է՛լ ավելի ամրապնդել սովետական հասարակության միասնությունը կոմունիզմի համար մղվող պայ-



քարում։ Անհրաժեշտ է դիմել ո՛չ թե վարչական միջոցների, ո՛չ թե կրոնական զգացմունքները արգելելուն, ծաղրելուն կամ վիրավորելուն, այլ անհրաժեշտ է հավատացյալների վրա ազդել գաղափարապես՝ համոզելու միջոցով, ցույց տալով նրանց, որ ոչ թե կրոնը, այլ գիտությունն է հանդիսանում մարդկության զենքը երջանիկ կյանքի, կոմունիզմի գաղափարների համար մղվող պայքարում։

—

# ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԸ

Ագիտկոլեկտիվի ղեկավար Մ. Բեգլեցովի պատմածը Գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից Լոռվա ՄՏ կայանի նվաճումների մասին

*Մեր ռեսպուբլիկայից գյուղատնտեսության ավելի քան 1.200 առաջավորներ, շատ կոլտնտեսություններ, կաթն-ապրանքային ֆերմաներ, ՄՏ կայաններ, գիտա-հետազոտական հաստատություններ և կազմակերպություններ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցներ են։ Ցուցահանդեսին մասնակցելու մեծ պատվի են արժանացել նաև մեր ՄՏ կայանը և մեր մի խումբ մեխանիզատորներ, տրակտորիստներ, բրիգադիրներ և մասնագետներ։*

*Արտադրական ի՞նչ ցուցանիշների են հասել մեր կոլեկտիվը և մեր առաջավորները, որոնք արժանացել են այդ մեծ պատվին։*

*ՄՏ կայանը թե՛ անցյալ տարի, և թե՛ այս*



*տարի 100 տոկոսով մեքենայացրել է ոչխարների խուզը ամբողջ շրջանում, ամբողջովին մեքենայացված է նաև խոտհնձի աշխատանքը տրակտորահարմար խոտհարքներում։ Մեխանիզատորները մեծ աշխատանք են կատարել բնական մարգագետինները բարելավելու, նրանց բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ 1953 թվականին սպասարկվող կոլտնտեսություններում ամբողջ սիլոսը՝ ավելի քան 30 հազար տոննա պատրաստվեց մեքենաներով։ Չորս տարի առաջ այդ կոլտնտեսություններում ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունը կազմում էր ընդամենը մոտ 400 հեկտար։ ՄՏ կայանի օգնության շնորհիվ այժմ խոտաբույսերի այդ տարածությունը ընդարձակվել է ավելի քան տասն անգամ։ Եվ այդ ամբողջ տարածության վրա վար ու ցանքը կատարվում են մեքենաներով։*

*ՄՏ կայանը մեծ չափով գերակատարել է կաթնա-ապրանքային ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացման պետական առաջադրանքները։ Այսպես, օրինակ, Սարատովկա, Կալինինո և ուրիշ գյուղերում մեքենայացված են կերի ու գոմաղբի տեղափոխման, կերի վերամշակման աշխատանքները։ Մեդովկա և ուրիշ գյուղերի կոլ-*

տնտեսությունների առանձին ֆերմաներում աշխատատար պրոցեսները լրիվ մեքենայացված են, որը մեծ չափով նպաստել է անասունների մթերատվության բարձրացմանը։ ՄՏ կայանի սպասարկած յոթը կոլտնտեսություններից երեքը՝ Մեդովկայի Կալինինի անվան, Բլագոդարնոյե գյուղի Կագանովիչի անվան և Սարատովկայի Խրուշչևի անվան կոլտնտեսությունները անասունների կաթնատվության բարձրացման պետական առաջադրանքները գերակատարելու շնորհիվ նվաճել են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք։

ՄՏ կայանի առաջավորներից ցուցահանդեսի թեկնածուների թվումն են՝ ավագ մեխանիկ Ստեփան Կաղենը, մեխանիկ Գրիգորի Ուրաժենկոն, տրակտորային բրիգադայի բրիգադիրներ Ֆեոդոր Մեշչերյակովը, Գրիգորի Նովոսելցովը, Իվան Պոպովը, խոտղող ագրեգատների ղեկավարներ Ֆեոդոր Արեֆևը, Հովսեփ Մարգարյանը, տրակտորիստներ Սարգիս Բոյաջյանը, Իվան Կուբրակը և ուրիշները։

Ահա այդ անվանի մեխանիզատորների ցուցանիշները։ Տրակտորիստ Ս. Բոյաջյանը անցյալ տարի Կալինինո գյուղի Ստալինի



անվան կոլտնտեսությունում 1.500 տոննա սիլոս պատրաստեց, մեծ չափով գերակատարելով սահմանված առաջադրանքը։ Անվանի մեխանիզատորը այս տարի աշխատում է ավելի բարձր արտադրողականությամբ։ Իրենց բրիգադայի սպասարկած կոլտնտեսություններում նա այս տարի ևս իր առաջադրանքները սիստեմատիկորեն և մեծ չափով գերակատարում է։ Ս. Բոյաջյանի և բրիգադայի մյուս մեխանիզատորների եռանդուն աշխատանքի շնորհիվ սիլոսակտրիչ մեքենաները գործում են անխափան, բարձր արտադրողականությամբ։ Միխայլովկա գյուղի կոլտնտեսությունում այժմ օրական 100 տոննա սիլոս է պատրաստվում, Կալինինո գյուղի կոլտնտեսությունում՝ դրանից երկու անգամ ավելի։ Մեխանիզատորների օգնությունից ոգեշնչվելով, այդ գյուղի կոլտնտեսականները պարտավորվել են սիլոսի պատրաստման պլանը 700 տոննայով գերակատարել։

Գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներից իր բարձր ցուցանիշներով աչքի է ընկնում նաև Ֆեոդոր Արեֆևը։ Նա ՄՏ կայանի անվանի մեխանիզատորների շարքին է պատկանում։ Արեֆևը մի քանի մասնագիտության է տիրապետում. նրան մեկ կարելի

է տեսնել ինքնագնաց խոտհար մեքենայի վրա, մեկ՝ ոչխար խուզող ագրեգատը ղեկավարելիս։ Բարձր արտադրողականությամբ օգտագործելով նոր տեխնիկան, նա անցյալ տարի Կաթնաղբյուր, Կույբիշև և Կալինինո գյուղերի կոլտնտեսություններում խուզեց 12 հազար գլուխ ոչխար։ Նույնը պետք է ասել նաև անվանի մեխանիզատոր Հովսեփ Մարգարյանի մասին։ Նա նույնպես մի քանի մասնագիտություններ է համատեղում, գարնանը նա ղեկավարում է ոչխար խուզող ագրեգատի աշխատանքը, իսկ բերքահավաքի ժամանակ կոմբայնով հունձ է անում։

Գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուների թվին է պատկանում նաև տրակտորիստ Ի. Կուբրակը, որն արդեն մի քանի տարի է ինչ աշխատում է ՄՏ կայանում և փորձված մեխանիզատոր է։ Նա 1953 թվականին սահմանված 500 հեկտարի փոխարեն կատարեց 700 հեկտար վար։ Կուբրակի ղեկավարած ԴՏ—54 տրակտորը անխափան և բարձր արտադրողականությամբ է գործում նաև այս տարի։

Մեր ՄՏ կայանում մեծ հարգանք է վայելում անվանի նորարար-ռացիոնալիզատոր Գրիգորի Ուրաժենկոն։ Նրան լավ են ճանաչում մեր ռեսպուբլիկայի և մեր հարևան



ռեսպուբլիկայի աշխատողները։ Նա «Վոլի» մարկայի կաթնածծիչ ապարատի հեղինակն է, այն ապարատի, որը լայնորեն կիրառվում է ինչպես Սովետական Հայաստանի, այնպես էլ եղբայրական ուրիշ ռեսպուբլիկաների կոլտնտեսություններում։ Արտադրության մեջ արմատավորվել են նաև նրա ռացիոնալիզատորական մի շարք ուրիշ առաջարկություններ։

Ահա և մեխանիկ Ս. Կազեևը։ Նա նույնպես ՄՏ կայանի նորարարներից է և ստեղծել է խոտ դիզող մեքենա։ Նրա հնարած մեքենայով անցյալ տարի շրջանում մի քանի հարյուր տոննա խոտ դիզվեց։

Ուշադրավ են նաև ցուցահանդեսի մյուս մասնակիցների՝ առաջավոր բրիգադիր Ց. Մեշչերյակովի, ավագ զոոտեխնիկ Ս. Սիմոնյանի և մյուսների ցուցանիշները։

Մեր մեխանիզատորներից ո՞վ չի կարող այդպիսի ցուցանիշների հասնել, չէ որ բոլորն էլ նույն մեխանիզմների հետ գործ ունեն, նույն մեքենաներն են աշխատեցնում։ Հարկավոր է միայն գերազանց տիրապետել տեխնիկան, հոգատարությամբ խնամել յուրաքանչյուր մեքենան, նրա յուրաքանչյուր մասը, աշխատել բարեխղճորեն, մեծ եռանդով։

Եվ այժմ այդպես են աշխատում ՄՏ կայանի շատ մեխանիզատորներ։ Բոլորն էլ ոգեշնչված են այն մեծ պատվով, որին արժանացել են իրենց ՄՏ կայանը, իրենց ընկերները։

ՄՏ կայանում ծավալվել է սոցիալիստական լայն մրցություն՝ 1955 թվականին նույնպես Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճելու համար։ Մրցության շնորհիվ ընթացիկ տարվա գյուղատնտեսական աշխատանքներում նոր հաջողությունների են հասել թե՛ ցուցահանդեսի թեկնածուները և թե՛ շատ ուրիշ մեխանիզատորներ։ Ֆեոդոր Միշչերյակովի ղեկավարած տրակտորային բրիգադան մեծ չափով գերակատարել է ինչպես գարնանացանի, այնպես էլ ցանքերի մշակության առաջադրանքները։ 55 հեկտարի դիմաց այդ բրիգադան քառակուսի-բնային եղանակով կատարել է 60 հեկտար կարտոֆիլի ցանք, ապահովելով դաշտային աշխատանքի բարձր որակը։ Գարնանացանի առաջին օրերին Ուռուտ գյուղում նրա կատարած աշխատանքի ուսանելի փորձը լայնորեն տարածվեց մյուս բոլոր բրիգադաներում։

Այս տարի արտադրական իր բարձր ցու-



ցանիշներով աչքի է ընկնում տրակտորիստ Ի. Սեմյոխինը։ Նա սիստեմատիկորեն գերակատարում է տրակտորային աշխատանքների պլանը, կատարում է բացառապես բարձր որակով և ջանք չի խնայում որպեսզի եկող տարի ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճի։

№ 4 բրիգադայի տրակտորիստ Գրիգորի Տամինինը, աշխատելով ԴՏ—54 տրակտորի վրա, սիստեմատիկաբար օրական կատարում է 6—7 հեկտար վար։ Տրակտորիստ Խալատ Բաղդասարյանը, վարի առաջադրանքների գերակատարմանը զուգընթաց, մեծ չափով վառելանյութի խնայողություն է տալիս։ Իրենց լավ աշխատանքով ՄՏ կայանում մեծ հարգանքի են արժանացել նաև տրակտորիստներ Յա. Մորոզովը, Ա. Պոդգաբելովը, Վ. Ղամբարյանը և շատ ուրիշները։

Գործարար մրցության շնորհիվ ՄՏ կայանի լավագույն մեխանիզատորները աշխատանքի ուսանելի փորձ են կուտակել։ Այստեղ, տրակտորիստ Ի. Կուբրակը ՄՏ կայանում համարվում է ամենախոր վար կատարողը, իսկ Ի. Սեմյոխինը աչքի է ընկնում որպես հաջող մարկյորող։ Մի շարք մեխանիզատորներ արդեն ընդօրինակել են իրենց ընկերներին և սիրով օգտագործում են նր-

րանց փորձը։ Կուբրակի և Սեմյոխինի աշխատանքի մեթոդները կարճ ժամանակում արմատավորվեցին երկրորդ բրիգադայում։ Ցուցահանդեսի թեկնածու Կուբրակի օրինակին առաջինը հետևեց Նիկոլայ Կարպովը։

Մասսայականացնելով առաջավորների փորձը, ագիտատորները նպաստում են սոցիալիստական մրցության է՛լ ավելի լայն ծավալմանը։ Տրակտորային առաջին բրիգադան սոցիալիստական մրցության մեջ է մտել երրորդ բրիգադայի հետ։ Տրակտորային երկրորդ բրիգադան մրցում է միաժամանակ չորրորդ և հինգերորդ բրիգադաների հետ։

Մրցությունը հիանալի արդյունքներ է տալիս։ ՄՏ կայանի մեխանիզատորները տրակտորային մի շարք աշխատանքների առաջին կիսամյակի առաջադրանքները զգալի չափով գերակատարել են։ Նրանք այժմ ամեն բան անում են գյուղատնտեսական տարին բարձր ցուցանիշներով փակելու, եկող տարի նույնպես Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուի իրավունք նվաճելու համար։

---



## ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Ազատագրված չին ժողովուրդը վիթխարի հաջողությունների է հասել հայրենի երկրի արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության բոլոր մյուս ճյուղերի զարգացման գործում։ Օր-օրին ծաղկում ու բարգավաճում է Չինական ժողովրդական ռեսպուբլիկան։ Այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ Չուգունի թողարկումը 1952 թվականին 1949 թվականի համեմատությամբ ավելացել է ավելի քան 7 անգամ, պողպատինն ու գլանվածքինը՝ 8 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 1,5 անգամ, քարածխինը՝ 2 անգամ, նավթինը՝ 3,5 անգամ, մետաղակտրիչ հաստոցներինը՝ 6,5 անգամ, ցեմենտինը՝ 4 անգամ, շաքարինը՝ մոտ 2 անգամ, բամբակի հումքինը՝ 3 անգամ և այլն։

✪ Չինաստանում ժողովրդական ռեսպուբլիկա հաստատվելու չորրորդ տարում արդյունաբերության

արտադրությունը հասավ այնպիսի աստիճանի, որպիսին չէր եղել Չինաստանի ամբողջ պատմության ընթացքում։

✪ Անցյալ տարի Չինաստանում կառուցվեցին 75 գործարան և հանք, մեծ թվով երկաթուղային ճանապարհներ, ջրանցքներ և այլն։ Կառուցված օբյեկտների թիվը հասնում է 130-ի։ Այս տարի կառուցվելու են երկաթուղային 9 նոր գծեր, որոնց ընդհանուր երկարությունը կլինի 600 կիլոմետր։ Բացի այդ, կառուցվելու է նաև 5 հազար կիլոմետր խճուղային ճանապարհ։ Երկաթուղային և խճուղային ճանապարհների միջոցով մշտական կապ կստեղծվի ծայրամասերի և կենտրոնական քաղաքների միջև։

✪ Չինաստանում մինչև ժողովրդա-դեմոկրատական կարգեր հաստատվելը գոյություն չուներ մեքենաշինություն, իսկ այժմ երկրում բուռն թափով զարգանում է հայրենական մեքենաշինությունը։ Արդեն թողարկվում են դիզելներ, խոշոր էլեկտրամոտորներ, տրանսֆորմատորներ, տեքստիլ արդյունաբերության սարքավորումներ, գյուղատնտեսական մեքենաներ, բարդ տեսակի հաստոցներ և այլն։

✪ Նոր Չինաստանում ստեղծվում է տրակտորային, ավտոմոբիլային, էներգետիկ և ծանր մեքենաշինության արդյունաբերություն։

✪ Արդյունաբերության զարգացումը փոխել է երկրի դեմքը։ Ժամանակակից մետաղամշակության, մե-



քենաշինական, ցեմենտի գործարաններ, էլեկտրակայաններ, հանքահորեր են կառուցվում այնպիսի շրջաններում, ուր առաջներում ոչ մի ձեռնարկություն չի եղել։ Արդյունաբերական խոշորագույն կենտրոններ են ստեղծվում Շիցզյանդժոանում, Խանյանում, Տայյանում, Սիանում, Ջունշինում և ուրիշ տեղերում։

✪ Այս տարի Տայյանում կավարտվի ծանր մեքենաշինության գործարանի շինարարությունը, որը խոշորագույնն է Չինաստանում։ Արդեն աշխատում է գործարանի մարտենյան ցեխը։ Գործարանը հագեցված է ժամանակակից սովետական ավտոմատիկ սարքավորումներով։

✪ Անցյալ տարի Չինաստանի մեքենաշինարարները երկրին տվեցին 600 նոր տեսակի արտադրանք, այդ թվում՝ մետաղակտրիչ հաստոցներ, օդային հզոր կոմպրեսորներ, հիդրոգեներատորներ, շոգետուրբիններ, տրանսֆորմատորներ և այլն։

✪ Այս տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա նույն ամիսների համեմատությամբ, չուգունի ձուլումն ավելացել է 43,9 տոկոսով, պողպատինը՝ 37,4 տոկոսով, գլանվածքինը՝ ավելի քան 43,1 տոկոսով։ Ածխի հանույթը առաջին եռամսյակում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 27 տոկոսով։

✪ Երկրի ինդուստրացման գործում չինական ժողովուրդը հենվում է Սովետական Միության անշահա-

խնդիր և եղբայրական օգնության վրա։ Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի կառավարության հրավերով այնտեղ աշխատում են հարյուրավոր սովետական մասնագետներ։

✪ Անցյալ տարի Սովետական Միության օգնությամբ Չինաստանում սարքավորվել և վերակառուցվել է 141 խոշոր ձեռնարկություն, որոնց թվում՝ մետաղամշակման կոմբինատներ, նավթաթորման գործարաններ, էլեկտրակայաններ և այլն։

✪ Մանր արդյունաբերության զարգացման հետ միասին ծավալվում է նաև թեթև արդյունաբերության ձեռնարկությունների շինարարությունը։ Կառուցվում են բրդյա և բամբակյա գործվածքների, մետաքսի, կոշկի, թղթի, շաքարի ֆաբրիկաներ ու գործարաններ։ 1951—53 թ. թ. ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել 21 տեքստիլ ֆաբրիկաներ։ Այժմ սարքավորվում է 9 և ընդլայնվում ու վերակառուցվում է 20 տեքստիլ ձեռնարկություն։

✪ Խոշոր հաջողություններ ունի Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ 1953 թվականի գարնանը ավարտվեց հողային ռեֆորմը։ Աշխատավոր գյուղացիության ձեռքն անցավ հողը, որի համար նա դարեր շարունակ պայքարում էր։ Հող ստացան 300 միլիոն գյուղացիներ։

✪ Հողային ռեֆորմի շնորհիվ միայն կալվածատիրական հողերից չինական գյուղացիությունն ստացավ 47 միլիոն հեկտար։ Ազատագրվելով ֆեոդալական



ճնշումից և ստանալով հող, աշխատավոր գյուղացիությունը միավորվում է աշխատանքային փոխօգնության խմբերի և արտադրական կոոպերատիվների մեջ։ 1953 թվականի վերջին տնտեսության այդ նոր ձևի մեջ միավորվեցին ամբողջ գյուղացիական տնտեսությունների 43 տոկոսը։

✪ Ժողովրդական Ռեսպուբլիկայի գոյության հենց առաջին տարում վերականգնվեց գյուղատնտեսությունը։ Պարենային կուլտուրաների և բամբակի բերքը 1952 և 1953 թ. թ. նախապատերազմյանի համեմատությամբ շատ ավելի բարձր էր։

✪ Վիթխարի աշխատանք է կատարված ջրաշինարարության ուղղությամբ։ 1949—1953 թ. թ. ընթացքում 3 միլիոն 300.000 հեկտար հողային տարածություն դարձել է ոռոգելի։ Այդ տարածությունը հավասար է Բելգիայի ամբողջ տերիտորիային։

✪ Տարեցտարի մեծ չափերով ավելանում է ազգային եկամուտը, բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը։ 1953 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ազգային եկամուտը կազմում էր 336,3 տոկոս, իսկ ծախսերը՝ 343 տոկոս։ 1950—1953 թ. թ. պետական բյուջեի եկամուտներն ու ծախսերն աճել են 3,4 անգամ։

✪ 1953 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի բյուջեում պետական ձեռնարկություններից ստացվող եկամուտներն ավելացել են 8 անգամ։

✪ *1953 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, ժողովրդական տնտեսության ֆինանսավորումը ավելացավ մոտ 42 տոկոսով, ընդորում ծանր արդյունաբերության զարգացման համար կատարվող հատկացումներն ավելացել են 47,31 տոկոսով, վառելանյութի արդյունաբերությանը՝ 84,56 տոկոսով, գեոլոգիական աշխատանքներինը՝ 611,46 տոկոսով, շինանյութերի արդյունաբերությանը՝ 204,14 տոկոսով և այլն։*

✪ *Գնալով անընդհատ բարձրանում է չին ժողովրդի նյութական բարեկեցությունը։ 1949 թվականի համեմատությամբ 1952 թվականին աշխատավարձը բարձրացել է 60—120 տոկոսով, իսկ 1953 թվականին՝ ավելի շատ։*

✪ *Խոշոր հաջողություններ են ձեռք բերված ժողովրդական կրթության և կուլտուրայի զարգացման բնագավառում։ Միայն տարրական դպրոցներում սովորում են 55 միլիոն երեխաներ, իսկ բարձրագույն դպրոցներում՝ 220 հազար հոգի։ Սովորողների 60—80 տոկոսը բանվորների և գյուղացիների զավակներ են։ Ավելի քան 100 միլիոն մարդ սովորում են երեկոյան հանրակրթական դպրոցներում։ Ամբողջ երկրում կառուցվում են նոր ինստիտուտներ, դպրոցներ և հիվանդանոցներ։*

✪ *Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը անընդհատ ավելացնում է սոցիալական և կուլտուրական միջոցառումների գծով կա-*



*տարվող հատկացումները։ Այդ ուղղությամբ կատարվող ծախսերն անցյալ տարի, մյուս տարվա համեմատությամբ, ավելացել են 4,6 անգամ։*

✪ *Անընդհատ ընդարձակվում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը։ Անցյալ տարի երկրում գործում էր 2.436 ակումբ և ավելի քան 6 հազար կուլտուրայի տուն։ Գործարաններում, ֆաբրիկաներում, ինչպես նաև գյուղական վայրերում գործում են մոտ 20 հազար ընթերցարան։*

Այս բոլոր հաջողությունները ցույց են տալիս Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի հզոր ուժն ու կենսունակությունը, որը գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում։

———

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԵՆՔ ԱՇՆԱՆԱՑԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

*1. Աշնանացանը կատարենք բարձրորակ սերմերով և ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում։*

*2. Մեր բրիգադան ինչպես է բարելավում աշնանացան կուլտուրաների նախացանքային մշակությունը։*

*3. Ծավալենք սոցիալիստական մրցություն՝ աշնան գյուղատնտեսական աշխատանքները կազմ ու պատրաստ սկսելու, 1955 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար։*

*4. Ինչպես է կատարում մեր ՄՏ կայանը աշնան գյուղատնտեսական աշխատանքները։*

*5. ՄՏ կայանների կազմակերպող դերը կոլտնտեսություններում։*

*6. Աշնանացանի ընթացքում առավելագույն արդյունավետությամբ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան։*



*7. Մեր կոլտնտեսությունն ինչպես է նախապատրաստվել աշնանացանին։*

*8. Աշնանացանը կատարենք բարձր բերքատու և ընտիր սերմերով։*

*9. Ապահովենք տրակտորների և մյուս գյուղգործիքների անխափան աշխատանքը։*

*10. Մեխանիզատորների և կոլտնտեսականների լայն շրջանում արմատավորենք առաջավոր փորձը։*

*11. Բերքատվության բարձրացումը հողագործության գլխավոր խնդիրն է։*

*12. Աչքի լույսի պես պահպանենք և ճիշտ օգտագործենք հանրային պարարտանյութերը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ—Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72, Հայպետհրատ, 1953 թ.*։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հինգերորդ Սեսիայում. *էջ 5—28, Հայպետհրատ, 1953 թ.*։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: *Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերին, էջ 53—65, Հայպետհրատ, 1953 թ.*։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *«Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և*

խոպան ու խամ հողերի յուրացման մասին»։ Տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 6-ի համարում։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին: Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1954 թ. փետրվարի 23-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 21-ի համարում։

## ՉԻՆԱՍՏԱՆՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՀԻՆԳ ՏԱՐԻՆ

1. Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողությունները։

2. Արդյունաբերության զարգացումը Չինաստանի ժողովրդական Ռեսպուբլիկայում։

3. Գյուղատնտեսության զարգացումը Չինաստանի ժողովրդական Ռեսպուբլիկայում։

4. Ծաղկում ու բարգավաճում է ժողովրդական Չինաստանի կուլտուրան, գիտությունն ու արվեստը։

5. Չինական ժողովուրդը պայքարում է հանուն երկարատև խաղաղության ամբողջ աշխարհում։

6. Անընդհատ բարձրանում է չին ժողովրդի նյութական բարեկեցությունը։

7. Չին ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ժողովրդական կրթության բնագավառում։

8. Աճում և ամրապնդվում է Սովետական Միության և Չինաստանի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։



## ՊԱՅՔԱՐԵՆՔ ԿՐՈՆԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐԻ ԴԵՄ

1. Կրոնը շահագործող դասակարգերի ձեռքին մի գործիք է աշխատավորներին ստրկացնելու համար։

2. Ի՞նչպես են ծագել կրոնական ծիսակատարությունները (տոները) և ու՞մ են պետք նրանք։

3. Ե՞րբ և ի՞նչպես ծագեց կրոնական պաշտամունքը։

4. Կրոնը միշտ էլ ծառայել և ծառայում է շահագործողներին և պաշտպանել ու պաշտպանում է նրանց շահերը։

5. Ընդդեմ կրոնական պաշտամունքների, հանուն նոր, սոցիալիստական կյանքի։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալիզմը և կրոնը. Երկեր, հատոր 10, էջ 92—98, Հայպետհրատ, 1949 թ.։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մարտնչող մատերիալիզմի մասին, Երկեր, հատոր 33, էջ 267—279, Հայպետհրատ, 1952 թ.։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Բանվորական պարտիայի վերաբերմունքը դեպի կրոնը, Երկեր, հատոր 15, էջ 500—515, Հայպետհրատ, 1950 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Զրույց ամերիկյան առաջին բանվորական դելեգացիայի հետ, Երկեր, հատոր 10, էջ 150—153, Հայպետհրատ, 1949 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կեցցե՛ Մայիսի Մեկը, Երկեր, հատոր 2, էջ 257—263, Հայպետհրատ, 1949 թ.։

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ՏԵԽՆՈԿՐԱՏԻԱՅԻ ԹԵՈՐԻԱ.— *Դա բուրժուական, ռեակցիոն, հակագիտական սոցիոլոգիական մի տեսություն է, որ մեր օրերում ուժեղ կերպով տարածում են ամերիկյան իմպերիալիզմի վարձու գաղափարախոսները։*

*Տեխնոկրատները խեղաթյուրում են հասարակության էկոնոմիկայի, քաղաքականության և տեխնիկայի միջև գոյություն ունեցող հարաբերությունները։ Նրանք տարածում են այն միտքը, թե իբր հասարակական կյանքում տեխնիկան առաջնություն ունի էկոնոմիկայի և քաղաքականության նկատմամբ։*

*Ըստ տեխնոկրատների կապիտալիստական հասարակության բոլոր հակասությունները հետևանք են այն բանի, որ իշխանության գլուխ են կանգնած «քաղաքագետներ», որոնք տեխնիկայից ոչինչ չեն հասկանում։ Բավական է իշխանության գլուխ կանգնած քաղաքագետներին փոխարինել տեխնիկան լավ իմացող մարդկանցով, արտադրության ղեկավարներով և նրանց հանձնել ամբողջ էկոնոմիկան, որ վերանան կապիտալիստական հասարակության բոլոր հակասությունները։ Այստեղից էլ՝ տեխնոկրատիա հասկացողությունը, որ նշանակում է տեխնիկան իմացող մարդկանց, արտադրության ղեկավարների իշ-*



*խանություն, կառավարություն։ Տեխնոկրատները իրենց հակագիտական և կեղծ փաստարկումներով կանգնած են պետական ապարատը մոնոպոլիստներին ենթարկելու տեսակետի վրա։*

ԱՄՆ-Ի 1951 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 10-Ի ՕՐԵՆՔԸ.— *ԱՄՆ-ի կոնգրեսը 1951 թվականի հոկտեմբերի 10-ին ընդունեց այսպես կոչված «փոխադարձ անվտանգության ապահովումը» օրենքը, որը նպատակ ունի ֆինանսավորելու հայրենիքի դավաճան զինվորական հանցագործների առանձին անձանց կամ խմբերի, որոնք հավաքագրվել են ԱՄՆ-ի կողմից՝ ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ լրտեսական, դիվերսիոն հետախուզական, տեռորիստական քայքայիչ աշխատանք կատարելու համար։ Այդ նպատակները իրականացնելու համար ԱՄՆ-ի կոնգրեսը հատկացրեց 100 միլիոն դոլար։ Այդ օրենքը փաստորեն ուղղակի միջամտություն է ուրիշ երկրների ներքին գործերին և հանդիսանում է միջազգային հանրաճանաչ նորմաների ու կանոնների կոպիտ խախտում։ ԱՄՆ-ի կոնգրեսը ընդունելով այդ օրենքը, դրանով իսկ կոպիտ կերպով խախտեց ՍՍՌՄ և ԱՄՆ-ի միջև 1933 թվականին կնքված համաձայնագիրը, որով կողմերին արգելված է անցկացնել նման միջոցառումներ։ Համաձայնագրի 3-րդ կետը պարտավորեցնում է կողմերին՝ չթույլատրել իրենց տերիտորիաների վրա զինված կազմակերպություն կամ խմբակ ընդդեմ մյուս պետության։ Ուրիշ երկրների*

ներքին գործերին ԱՄՆ-ի միջամտելու հարցը, Սովետական Միության պահանջով մտցվեց գլխավոր ասամբլեայի 6-րդ սեսիայի քննարկմանը, որտեղ սովետական դելեգացիան սուր քննադատության ենթարկեց ԱՄՆ-ի հիշյալ օրենքի բովանդակությունն ու հանցագործ նպատակները և մերկացրեց նրա խակական էությունը։ Սովետական կառավարությունը ԱՄՆ-ին ուղղված իր 1951 թ. նոյեմբերի 21-ի և 1952 թ. հունվարի 9-ի նոտաներում ամբողջ աշխարհի առջև բացահայտեց և մերկացրեց այդ օրենքի ագրեսիվ նշանակությունը։ ԱՄՆ-ի բոլոր լրտեսական փորձերը ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ՝ ժողովրդի կողմից ժամանակին հայտնաբերվում և ոչնչացվում են։

ԿՈՆՍՈՐՑԻՈՒՄ.— Կապիտալիստական մոնոպոլիայի ձևերից մեկն է։ Աշխարհի 8 խոշոր նավթային ընկերությունները միավորվել են միջազգային կազմակերպություն-կոնսորցիում, որի մեջ մտնում են՝ 5 ամերիկյան, անգլո-իրանական, անգլո-հոլանդական և ֆրանսիական նավթային ընկերությունները։ Այդ կոնսորցիումում իրավունքների և եկամուտների 40 տոկոսը պատկանում է ամերիկյան մոնոպոլիստներին, 40 տոկոսը՝ անգլո-իրանական ընկերությանը։

Իրանական ժողովրդի հետևողական պահանջով Իրանի Մեջլիսը 1951 թվականի մարտին ընդունած օրենքով ազգայնացրեց երկրի նավթարդյունաբերությունը, անգլիական մոնոպոլիստներին զրկեց Իրանական նավթից։ Անգլիական կապիտալիստներն իրենց իրավունքները Իրանում վերականգնելու նպատակով դիմեցին ԱՄՆ-ի մոնոպոլիստների միջամտությանը, որոնք վաղուց ձգտում էին տիրանալ Իրանի նավթին։



ԱՄՆ-ի և Անգլիայի կոպիտ միջամտությամբ Իրանի ներքին գործերին հասցրեց այն բանին, որ օգոստոսի սկզբին Զահեդիի կառավարության և կոնսորցիումի միջև ստորագրվեց համաձայնագիր Իրանական նավթի վերաբերյալ։ Այդպիսով բացի անգլիական կապիտալիստներից, իրանական նավթի նկատմամբ լայն իրավունքներ ստացան նաև ամերիկյան մոնոպոլիստները։ Զահեդիի կառավարությունը հակառակ ժողովրդի կամքի, կոպիտ կերպով խախտելով նավթային արդյունաբերության ազգայնացման մասին օրենքը, համաձայնել է, որպեսզի ամերիկյան և անգլիական կապիտալիստական այդ կոնսորցիումը 40 տարի իշխի Իրանի նավթային հանքերին ու գործարաններին, զբաղվի նավթի հանման, վերամշակման և վաճառքի հարցերով։ Այդ համաձայնագրով Իրանին պարտավորեցրել են վճարելու այն բոլոր կորուստները, որ կրել է անգլո-իրանական ընկերությունը վերջին 3 տարվա ընթացքում։ Այսպիսով Իրանին ստիպել են վճարելու մեծ տուգանք այն բանի համար, որ իրանական ժողովուրդը փորձեց վերականգնել իր օրինական իրավունքները իր նավթի նկատմամբ։

